«Քաղցր եւ հեշտական մանաւանդ քան ատելի: Զի որպէս ընդ երիտասարդս բարեբարս ուրախ լինին ծերք իմաստունք, եւ թեթեւագոյն նոցին ծերութիւն լինի, որ ի մանկտւոյ մեծարին եւ սիրին. նոյնպէս երիտասարդք ընդ հրամանս ծերոցն խնդան, որովք ի փոյթ առաքինութեանցն յորդորեալ գան: Ոչ ինչ փոքր ինձ՝ ձեզ, եւ ձեզ՝ ինձ հեշտականս լինել կարծեմ: Այլ տեսանէք, զի ծերութիւն ոչ միայն լքեալ լուծեալ եւ դատարկ չէ, այլ եւ գործօն եւս, եւ ցանդ գործէ ինչ եւ ջանայ, այս ինքն այնպիսի, որպիսի ինչ իւրաքանչիւր ուրուք փոյթ յառաջին կեանսն եղեւ: Իսկ զի՞նչ, եթէ ուսանի եւս ինչ, որպէս զՍողոն տեսանեմք պարծեցեալ, որ զանձնէ ասէ, թէ տակաւ ծերանամ եւ հանապազ ուսանիմ ինչ. զոր եւ ես արարի, որ զձոյն դպրութիւն ի ծերութեան ուսայ: Եւ զայն այնպէս անյագ առի ի միտ, իբրեւ ծարաւ ինչ սաստիկ յագեցուցանել ցանկացեալ, որպէս զի եւ այնք եւս ծանօթ եւ գիտելի եղեն ինձ, յորոց այժմիկ օրինակս ի կիր արկանեմ, որպէս եւ տեսանէք: Զնոյն եւ զՍոկրատայ լուայ թէ արար, ուսեալ հանգամանս նուագածութեանն, կամէի իսկ եւ զայն, քանզի հինքն նուագածութիւն ուսանէին, բայց ի դպրութեան վաստակեցի:

Ժ.

Եւ ոչ ցանկամ ինչ այժմ ընդ ոյժ եւ ընդ զօրութիւն առն երիտասարդի, որպէս յերիտասարդութեանն՝ զցլու եւ զփղաց զօրութիւն չըղձանայի, քանզի այս մեւս եւս դարովութիւն էր ծերութեանն: Որ ինչ էն, նովիմբ արժան է վարել, եւ զինչ գործեսդ, ըստ կարին գործել: Քանզի՞ որ բարբառ քամահանաց կայցէ քան զՄիղոնի կրոտոնացւոյ, որ յորժամ ծերն իսկ էր եւ ընահատական արշաւելս յասպարէզի տեսանէր, ասի թէ հայեցաւ ընդ բազուկս իւր եւ զարտասուս հարեալ ասաց. Այլ դոքա քաջ քաջ մեռեալ են: Ոչ այնպէս դոքա, քան թէ դու իսկ, զառանցեալդ: Զի ոչ եթէ ի քէն երբեք ազնուացեալ ես, այլ ի կողից եւ ի բազկաց քոց: Ս. Եղիոս այնպիսի ինչ ոչ գործեաց, եւ ոչ Տի. Կորունկանիոս, եւ

ոչ այժմ Պ. Կրասոս, յորոց քաղաքացւոց օրէնք կարգէին, որոց իմաստութիւն յառաջադէմ մինչեւ ցյետին շունչն եղեւ։

Զանգիտեմ թէ դուցէ տկարանայցէ ծերութեամբ ճարտարախօսն։ Վասնզի գործ նորա ոչ մտաց միայն է, այլ ուժոյ եւս, եւ զօրութեան։ Բայց ոչ գիտեմ զիարդ կամ որով օրինակաւ այն ի բարբառ ալեւորացն ի ծերութեան պայծառանայ. զոր տակաւին չկորուսի, եւ տեսանէք զամս հասակի իմոյ. բայց սակայն վայելուչ է բան ծերոյն, հանդարտ եւ ցածուն։ Եւ բազում անգամ գեղեցիկ եւ մեղմական ճառք ծերոյ ճարտարախօսի, ինքնին իւր ունկնդրութիւն գործէ։ Եւ զոր դու քեզէն կատարել ոչ կարես, սակայն Սկիպիոնի մարթես հրաման տալ եւ Գ. Լեղեոսի։ Վասնզի զի՞նչ ինչ քան զծերութիւն քաղցրագոյն կայցէ, որ մանկութեան փութով բարգաւաճ լեալ իցէ։

Մի թէ զայն եւս զօրութիւն չթողուցո՞ւք ծերութեան, զի զերիտասարդսն ուսուցանիցէ եւ խրատիցէ, եւ առ ամենայն իսկ պաշտամանցն պատրաստ թեքեալ կազմիցէ. զի՞նչ քան զայն գործ պայծառագոյն կայցէ։ Իսկ ինձ Կն. եւ Պ. Սկիպիոնք, եւ հաւքն քո երկոքին, Ղ. Էմիղեոս, եւ Պ. Աֆրիկանոս գունդ գունդ մանկտւով ազնուականօք բախտաւորք երեւէին։ Եւ ոչ զոք ի ճարտարապետաց հանգամանաց արուեստից ճարտարութեան պարտ իցէ չերանելիս կարծել, թէպէտ եւ ծերացեալ եւս իցէ զօրութիւնն եւ նուազեալ։ Թէպէտ եւ այն զօրութեան նուազութիւն բազում անգամ յերիտասարդութեան չարեացն գործի եւ ոչ ծերութեան։ Վասնզի երիտասարդութիւն ցանկացող եւ անխառն մարմին տկարացեալ ծերութեանն աւանդէ։

Կիւրոս որպէս ի Քսենոփոնի գիրսն կայ, ճառիւքն, զոր ի մեռանելն արկ, թէպէտ եւ ծեր եւս յոյժ էր, յայտ առնէ, թէ չզգայր երբեք եթէ տկարագոյն ինչ իւր ծերութիւնն լեալ իցէ, քան որչափ երիտասարդութիւնն լեալ էր։ Եւ ես յիշեմ զՂ. Մետեղղոս, որ յորժամ քառամեայ ժամանակ յետ երկրորդի բդեշխութեանն մեծ քրմապետ կացեալ էր, քսան եւ երկու ամ եկաց ի գլուխ քրմութեանն, այնպէս հարուստ եւ հզօր

էր զօրութեամբ ի յետին ժամանակս հասակին, մինչեւ երիտասարդութեան իսկ ոչ ցանկալ։ Ոչ է ինչ ինձ հարկ զինէն ճառել, թէպէտ եւ այն իսկ առանձինն իմն է ծերոց, եւ ներում հասակին շնորհ։



Տեսանէք զիարդ ի Հոմերոսի դիւան, բազում անգամ Նեստոր, զիւր առաքինութիւնսն քարոզէ։ Քանզի յերրորդում տիս մարդկան կեայր, եւ չգոյր նմա կասկածել թէ մի յորժամ զճշմարիտսն զանձնէ պատմիցէ, ցոփ ինչ եւ շատախօս կարի թուիցի։ Քանզի որպէս Հոմերոս ասէ, ի նորա լեզուէն քան զմեղր եւս քաղցրագոյն բանն հոսէր. եւ ոչ կարօտանայր ինչ իւիք մարմնոյ զօրութեամբ առ այնպիսի քաղցրութիւնն. եւ սակայն զօրավարն Յունաց աշխարհին՝ չըղձանայ թէ տասն Այիակայ նմանս ունիցի, այլ թէ Նեստորի. զոր եթէ դէպք տային, համարի թէ վաղ կորնչէր Տրովացւոց քաղաքն։

Այլ այսքէն յիս դառնամ։ Ութսուն եւ չորից ամաց եմ. եւ կամէի արդարեւ թէ կարիցեմ նովիմբ, որով Կիւրոս պարծէր, պարծել. բայց սակայն զայն իշխեմ ասել, թէ չեմ այնպէս հզօր, որպէս յորժամ զօրականն էի ի պունիկական կռուի, կամ կապարճակիր ի նմին պատերազմի, կամ բդեշխ ի Սպանիա, կամ յետ քառամեայ ժամանակի, հազարապետս կացեալ ճակատ եառ առ Թերմոպիւղեօք, ի բդեշխութեան Մ. Ակիլեայ Գղաբրիոնի, բայց սակայն որպէս դուքդ տեսանէք, ոչ բնաւ ջլատեաց եւ ծնգեաց զիս ծերութիւն. ոչ ատեան խնդում զօրութեանս ցանկանայ, ոչ բեմն, ոչ բարեկամք, ոչ տնանիկք, ոչ հիւրք։ Քանզի չեմ երբեք հաւանեալ այնմ հին առասպելին յաճախելոյ, որ պատմէն. թէ ՑԱՐԱԺԱՄ Ի ԾԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՆԵՍ, ԹԷ ԲԱԶՈՒՄ ԺԱՄԱՆԱԿՍ ԿԱՄԻՑԻՍ ԾԵՐ ԼԻՆԵԼ։ Իսկ ես ախորժեմ առաւել սակաւ ինչ ժամանակ ծեր լինել, քան ծեր լինել, մինչ չեւ իցեմ։ Վասն այնորիկ չեգիտ ոք զիս տակաւին, որում առ պարապութեան չկարիցեմ երեւել։

Այլ թերեւս սակաւ քան զձեզ զօրութիւն ունիցիմ։ Նա եւ ոչ դուք զՏ. Պոնտիոսի հարիւրապետի զզօ-

րութիւնն ունիք. արդ ազնուագոյն ինչ ոք նա քան զձեզ իցէ: Չափ ինչ զօրութիւն միայն ոք ունիցի, եւ այնչափ, որչափ իւրաքանչիւր ոք ձեռնհաս իցէ, ջանասցէ, եւ չգրաւիցի նա մեծ իմն զօրութեան ցանկութեամբ: Ասի թէ յըմբշամարտ մրցութիւնս ի մարտիկսն եմուտ Միղոն*, զուարակ մի կենդանւոյն ի վերայ ուսոց բարձեալ: Արդ զայս մարմնոյ զօրութիւն արդեւք, եթէ զՊիւթագորայ զզօրութիւն հանճարոյ իմաստութեան կամիցիր թէ տայր ոք ցքեզ: Դորին բարութեամբ վարեսցիս, յորժամ գոյցէ. թէ չգուցէ, մի ցանկար: Ապա թէ ոչ պատանեակք մանկութեան, եւ որ սակաւիկ յառաջ մատուցեալ իցեն հասակաւ երիտասարդութեան պարտին տենչանալ: Օտարացեալ գնացք են ամից, եւ մի ճանապարհ բնութեան, եւ այն պարզ. եւ իւրաքանչիւր հասակաց անցնիւր ժամանակք տուեալ են. զի տկարութիւն մանկանոյ է, եւ գազանութիւն պատանեաց, եւ ցածուն միտք հաստատուն տիոց, եւ ծերութիւն պարարտ ինչ մի բնական ունիցի, որ յիւրում ժամանակին պարտ իցէ առնուլ: Կարծեմ թէ լուեալ իցէ քո, Սկիպիոն, զոր ինչ հիւրն քո նախնի Մասինիսսա այսօր իննսնամենի գործէ, յորժամ հետի ճանապարհ ուրեք գնասցէ, յերիւար բնաւ ոչ հեծանի. իսկ յորժամ անդրուարաւ երթասցէ, ոչ իջանէ. ոչ առ անձրեւի ինչ կամ առ ցրտոյն վտանգի զգլուխն ծածկէ. յոյժ իմն պնդութիւն է ի նմա. եւ այնպէս կատարէ զամենայն գործ թագաւորութեանն: Արդ կրթութիւն եւ եւ ժուժկալութիւն զօրութիւն ինչ յառաջին զօրութենէ եւ ի ծերութեանն կարէ պահել:

## ԱԺ

Չե՞ք զօրութիւն ի ծերութեան: Ոչ պահանջեն զօրութիւն ի ծերութենէ: Արդ եւ օրինօք եւ հաստատութեամբք թափուր է հասակ մեր յայնպիսեաց վաստակոց զորս չէ մարթ առանց զօրութեան բառնալ: Վասն որոյ ոչ միայն զոր չկարեմք, այլ եւ ոչ որչափ ինչ կարեմքն, պահանջիմք:

Այլ գոն բազում ծերք այնպէս դողդոջունք, զի ոչ մի ինչ գործ կամ կենաց պատշաճս ամենեւին մարթեն

վճարել։ Այլ եւ այն չէ ինչ առանձինն ծերութեան այլ առ հասարակ հիւանդութեան։ Քանի՞ տկարագոյն էր ուստր Գորնելեայ Ափրիկանոսի, այն որ զքեզ յորդեգիրս առ, որպէս հիւանդոտ եւ ցաւած. եւ եթէ այնպէս ինչ չէր լեալ, եւ նա միւս եւս լոյս քաղաքիս լինէր։ Զի ի հայրենի մեծանձնութիւնն պարարտագոյն ուսմամբ վարդապետութեան յաւելեալ էր։ Իսկ արդ զի՞նչ զարմանք իցեն թէ ի ծերսն երբեմն հիւանդք իցեն, ուր եւ երիտասարդք իսկ յայնմանէ ապրել ոչ կարեն։ Պարտ եւ պատշաճ է հակառակ կալ ծերութեանն, Լելի եւ Սկիպիոն, եւ բազում փութով զնորա թերակատարութիւն լնուլ։ Պարտ է իբրեւ ընդ ախտի ցաւոց այնպէս ընդ ծերութեանն կռուել։

Պարտ է զպայման առողջութեանն ունել. չափ ինչ կրթութիւն ի կիր արկանել. այնչափ ինչ ուտել եւ ըմպել, զի արծարծեսցի զօրութիւնն, եւ մի նեղեսցի։ Իսկ ոչ մարմնոյ միայն պարտ իցէ դարման տանել. այլ եւ մտացն եւ ոգւոց յոյժ իսկ առաւել։ Զի եւ նոքա, թէ ոչ իբրեւ ի ճրագ ձէթ արկանիցես, շիջանին յափշին ծերութեամբ։ Իսկ մարմինք աշխատութեամբ եւ կրթութեամբ ծանրանան, իսկ ոգիքն վարժեալք թեթեւագոյնք լինին։ Քանզի զորոց Կեկիլիոս ասաց, թէ ծերս դուսանս անմիտս. զայնցանէ որ վաղվաղք առ հաւատալ իցեն յայտ առնէ, զյաղճատելոցն եւ զպագաշելոց. որք ոչ եթէ ծերութեան ինչ չարիք են, այլ ծուլացելոյ եւ յուլացելոյ եւ քնէածն ծերութեան։ Որպէս զեղծութիւն եւ անառակութիւն մանաւանդ երիտասարդաց է քան ծերոց, բայց սակայն ոչ ամենեցուն երիտասարդաց է այլ յոռեացն եւ անպիտանեաց, սոյնպէս եւ ծերոցն անմտութիւն, որ զառանցելն կոչեցի, ծերոց թեթեւաց է եւ ոչ ամենեցուն։

Ուստերս չորս հուժկուս, եւ հինգ դստերս ունէր. այնչափ տան եւ ծառայից հոգայր Ապպիոս ծերն եւ կոյրն։ Քանզի զմիտսն իբրեւ զաղեղն ձգեալ եւ պնդեալ ունէր, եւ ոչ թուլացեալ անկանէր ընդ ծերութեամբն։ Ոչ իշխանութիւն միայն յիւրսն ունէր, այլ եւ տէրութիւն. երկնչէին ծառայք, պատկառէին որդեակք, ամենքեան սիրէին, բոլորեքեան յակն առնոյին. յայնմ տան հաստա-

տան կայր Հայրենի սովորութիւնն եւ խրատ։ Քանզի այսպէս պատուական է ծերութիւն, եթէ ինքն անձամբ անձին պաշտպանիցէ, եթէ զիւր իրաւունս ունիցի, թէ ոչ ընդ ումուք ձեռամբ գրաւեալ իցէ, թէ մինչեւ ցյետին շունչն իւրոցն տիրեսցէ։ Զի որ օրինակ զերիտասարդ յորում մի ինչ ծերութեան գտանիցի, այսպէս եւ զծեր, յորում մի ինչ երիտասարդութեան իցէ, գովեմ. զոյր եթէ զհետ ոք գնասցէ, մարմնով մարթի ծեր լինել, մտօք ոչ երբէք։ Եւթներորդ դպրութիւն* սկզբանց գրոցն ի ձեռին իմում է. զամենայն զկանխութեան յիշատակարանս ի մի վայր գումարեմ. զերեւելի դատաստանացն՝ որոց պաշտպանեցի, այժմիկ զճառսն հաւատեալ յօրինեալ կարգեմ. զարդարութենէ եւ զկրաւանց ընձիցն եւ զքրմապետացն եւ զքաղաքի օրինաց մատենագրեմ. եւ յոյն դպրութեամբ եւս վարիմ. ըստ պիւթագորայցն սովորութեան՝ վասն զուշ յիշատակացն կրթելոյ, զոր ինչ իմ զտիւ խօսեցեալ եւ լուեալ եւ գործեալ իցէ, երեկուենն յիշատակեմ։ Այդքա են վարժք իմաստութեան, այդքա արշաւանք ամպարտակի մտաց. աստէն ի սոսին ընդ քիրտն մտեալ եւ վաստակեալ, կարի մարմնոյ զօրութեան ոչ ցանկամ։ Կամ առ բարեկամս. գնամ սակէպ ի ծերակոյտ անդր, եւ բերեալ գնեմ առաջի իւս իրս զորոց ընդ երկար խորհեալ ի մտի իցեմ եւ տեսանեմ զնոսա մտաց եւ ոչ թէ մարմնոյ զօրութեամբ։ Զոր եթէ կատարել ոչ կարիցեմ, սակայն խշտեակն իմ մխիթարէ զիս, զմտաւ ածեալ զայն՝ զոր առնել ոչ կարիցեմ. բայց առաջին կեանքն տան ինձ այնմ ձեռնհաս լինել։ Քանզի որ ցանգ յայսպիսի փոյթ եւ ի վաստակս կեցցէ. չիմանայ յորժամ ծերութիւն ի վերայ հասեալ տարաժամիցէ։ Այսպէս մեղմով յանդգայ ծերանալ հասակն, եւ ոչ յանկարծօրէն վազվաղակի խորտակի, այլ երկայն ժամանակաւ շիջանի։

ԺԲ

Գայ այսուհետեւ երրորդ զրպարտութիւն ծերութեան. զի ասեն թէ ի փափկութեանց եւ ի ցանկութեանց անկանիցի։ Ով մեծապայծառ պարգեւի տիոյն. քանզի արդարեւ զայդ հանէ ի մէնջ, որ չարաչար իմն յերի-

տապալդութեանն է։ Ասէք ի ձեռս, երիտասարդք տղաքինիք, զհին ճառս Աբրիւտեայ տարենտացւոյ առն մեծի եւ աւագի, որ տուաւն ի ձեռս իմ յորժամ երիտասարդն էի ի Տարենտացւոց քաղաքի ընդ Կ. Մաքսիմեայ։ Ոչ մի ինչ գլխաւոր ժանտագործ ցաւս, քան զմարմնոյ ցանկութիւն, ասէր, տուեալ յախտաբնակաց, եւ այնր ցանկութեան տենչանք խառն ի խուռն եւ արձակերասանակ դրդուին առ ստանալ։

Այս թէ անտի աշխարհի մատնութիւնք, անտի հասարակաց իրաց կործանմունք ծնանին, անտի գաղտագողի պատգամախօսից ի թշնամիս լինել, եւ ամենեւին չիք իսկ ինչ եղեռն եւ ոճիր, յոր չդրդիցեն տենչանք ցանկութեանն, եւ բնաւ իսկ յոռութիւնք ոչ այլ ուստեք հրապուրեալ դրդուին թէ ոչ ի ցանկութենէ։ Այս փոխանակ զի բնութեանն եւ կամ դից ուրուք ոչ ինչ ազնուագոյն քան զմիտս՝ մարդոյն տուեալ իցէ. այնմ աստուածեղէն պարգեւին չիք ինչ այնպէս թշնամի, որպէս զցանկութիւն։

Քանզի եւ ոչ յորժամ տենչանք տիրիցեն, գոյ տեղի ժուժկալութեան, եւ բնաւ իսկ ամենեւին ի ցանկութեանն թագաւորութեան չմարթի առաքինութեան կալ յականատանի։ Այս զի մարթիցի դմին առաւելագոյն ի մերայ հասանել, դուլ եւ պատուէր տայր նկատել մտօք զայր մի անհնարին ի մարմնոյ ցանկութիւն դրդուեալ, եւ չհամարէր թէ իցէ ինչ ումեք այն երկմտութեան, թէ ցորքան ժամանակս նա այնպէս շռայլեցի, ոչ մի ինչ մարթի ածել զմտաւ, ոչ իմիք բանիւ, եւ խորհրդով հասանել։ Ամին իրի իսկ չիք ինչ այնպէս խոտան եւ ժանդաբեր քան զցանկութիւն, զի թէ մեծ իմն եւ երկարագոյն ցանկութիւնն իցէ, զամենայն մտացն լուսաւորութիւն շիջուցանէ։ Զայս ամենայն Աբրիւտայ ընդ Կ. Պոնտեայ սամնիտացւոյ հօրն այնորիկ յորմէ Սպ. Պոստումիոս եւ Տ. Վետուրիոս ի Կաւդինեայ մարտին ի պարտութիւն մատնեցան, խօսեցեալ ասէ Նէարքոս տարենտացի մեր հիւր, որ կացեալ մնացեալ էր ի բարեկամութեան Հռոմայ ազգին, եւ ի ծերոց նոյնպէս լուեալ պատմէր, եւ թէ էր ի մէջ բանիցն այնոցիկ Պղատոն աթենացի, զոր գտանեմ իսկ ի Տարենտացւոց քա-

զայքն եկեալ ի Գ. Կամիղեայ եւ Ապպեայ Կղաւդեայ բդեշխութեանն։

Զիմ զայնցանէ յածախիցեմ ճառել՝ զի առնուցուք ի միտ, եթէ զցանկութիւն մտօք եւ իմաստութեամբ չկարիցեմք քամահել, պարտուպատշաճ է շնորհակալ ծերութեանն լինել, զի որ չէ արժան, զայն չառնէ հաճոյ։ Զանզի արգել լինի խորհրդոյ ցանկութիւն, իմաստութեան թշնամի է, եւ զմտաց զաչս խղէ, եւ ընդ առաքինութեան չունի ինչ հաղորդութիւն։ Յակամայ կամս զառն հզօրի զՏ. Փղամինեայ զեղբայրն զՂ. Փղամինինոս ի ծերակուտէն ի բաց ընկեցի եւթն ամօք յետոյ քան զբդեշխն կալ նորա. բայց հարկ համարեցայ զցանկութիւնն յայտ առնել։ Զանզի նա յորժամ բդեշխն էր ի Գաղիացւոց աշխարհին ի խրախութեանն ի ժանդագործաց աղաչեցաւ, զի տապարաւ տաշեսցէ զմի ոմն յայնցանէ, որ ի պարաւանդան կային գլխապարտքն։ Նոյն յորժամ Տիտոս նորին եղբայր համարակալն էր յառաջ իսկ քան զիս, անկաւ։ Իսկ ինձ եւ Փղակկեայ արդարեւ չթուեցաւ հաճոյ այնպիսի ժանտ եւ մոլորոյ ցանկութիւն, որ զթշնամանս տէրութեանն ընդ գործ շնութեանն խառնեաց։

ԳԺ.

Բազում անգամ լուայ ի ծերոց, որք զանձանց ասէին թէ ի մերում անդ մանկութեան ի ծերոց անտի լուաք, թէ սովոր էր Կ. Փաբրիկիոս զարմանալ, զի յորժամ առ արքայ Պիւռոս հրեշտակագնաց լեալ էր, լուաւ ի Կինեայ Թեսաղացւոյ թէ է ոմն ** յԱթենացւոց քաղաքի, որ զանձնէ խոստանայ թէ իմաստուն իցէ եւ ասիցէ թէ զամենայն ինչ զոր առնիցեմք, ի ցանկութիւն պարտ իցէ հանել։ Այլ որ ի նմանէն զայն լուան Մ. Կուրիոս, եւ Տի. Կորունկանիոս սովոր էին ըղձանալ, զի նոյն հաւանութեան թուիցի Սամնիտացւոցն եւ Պիւռեայ իսկ գլխովին. զի դիւրաւ այնուհետեւ ի պարտութիւն մատնիցին, յորժամ ի ցանկութիւնս զանձինս տայցեն։ Մ. Կուրիոս ընդ Պ. Դեկեայ կեայր, որ հնգամեայ ժամանակաւ յառաջ քան զնորա բդեշխութիւն զանձն փախանակ քաղաքին

նուիրեաց ի չորրորդում բդեշխութեանն։ Զնոյն ճանաչէր Փաբրիկիոս, գիտէր եւ Կորունկանիոս, որք յիւրեանց կենաց եւ ի գործոց այնր՝ զորմէ ասեմս, Պ. Դեկեայ, ի միտ առնուին թէ արդարեւ է ինչ ի բնութենէ գեղեցիկ եւ լուսաւոր որ իւրովի ինքնակամն խնդրիցի, զորոյ եւ լաւքն եւ առաքինիք մտադիւք զհետ երթայցեն, խոտեալ եւ արհամարհեալ զցանկութեամբն։

Արդ ընդէ՞ր համակ զցանկութենէ խօսիցիմք, որ ոչ միայն պարսաւութիւն ինչ չէ, այլ եւ գլխաւոր դրուատիք ծերութեան. զի ոչ ցանկութիւնս ինչ կարի փափաքէ ծերութիւնն։ Ի կոչունսն, ասեն, չվայելիցէ եւ ի բազմախորտիկ սեղանսն յորդորեալս եւ ի յաճախ գինըմպելիս։ Ապա ուրեմն եւ ի գինեզինութենէ եւ ի խակութենէ եւ ի քնահատան լինելոյ ազատ եւ ի վեր է։ Բայց թէ շնորհել եւս ինչ պարտ իցէ ցանկութեանն, քանզի նորա ողոքանաց չլինիմք դիւրաւ դիմադարձ, զի աստուածեղէն մտօք Պղատոն կեր չարեաց զցանկութիւնն անուանէ, քանզի նովին իմն ըմբռնին մարդիկ, որպէս խայծիւ ձկունք. թէպէտ եւ յանչափ կոչունս չվայելէ ծերութիւն, սակայն ի չափ ինչ խրախունս մարթի ուրախ լինել։ Զկ. Դուիղիոս, որ զառաջինն զՊիւնացիս նաւատորմիղ նաւուք պարտեաց ի մանկութեան բազում անգամ տեսանէի զի ծեր էր, եւ յընթրեաց դարձեալ գայր, ուրախ լինէր աղեաւ եւ փողարաւ, զոր ինքն իսկ առանձինն յանձն առ առանց ուրուք օրինակի. այնչափ ինչ համարձակութիւն շնորհէին փառքն։

Բայց հի՞մ ես զայլոց ասիցեմ. յիս իսկ այժմէն եկից։ Նախ միշտ հանապազ ընկերակիցս ունէի։ Իսկ ընկերակիցքն հաստատեցան կացին յորժամ ես կապարճակիր էի, յետ ընդունելութեան իդէական յաշտից մեծի Մօրն Ննահտայ։ Արդ ի բազմականի ընդ ընկերաց նստեալ ամենեւին չափով ուտէի, բայց էր եւ եռանդն իմն հասակին, որ իբրեւ յառաջ մատչիցի, ամենայն ինչ օրըստօրէ մեղմագոյն առնի։ Զի ոչ եթէ զայնց խրախութեանց ուրախութիւն, մարմնոյ ցանկութեամբք չափէի եւ ոչ դասուք բարեկամաց եւ նոցին բանիւք։ Վասնզի քաջ իսկ մեր ազգք զբազմականս կոչնոց բարեկամացն որ կենաց հաղորդութիւն է, կենա-

կցութիւն անուանեցին. եւս ազնուագոյն քան զՅոյնս որք զնոյն իսկ մերթ գինեխրախուս կոչեցին եւ մերթ ընթրիս. զի որ փոքրն իցէ ի նմա, զայն իմն յայտ թուին առնել:

## Գ․Ժ․

Իսկ ես քանզի ընդ բանս ուրախ լինիմ, եւ ընդ դիպող խրախճանս եւս խնդամ. ոչ միայն ընդ զուգահասակաց, որ յոյժ սակաւք են, այլ եւ ընդ ձերում եւս հասակի եւ ընդ ձեզ իսկ. եւ շնորհս ունիմ ծերութեանն, որ աճեցոյց յիս զանյագութիւն բանից եւ կերակրոյ եւ զըմպելւոյ տենչանս եբարձ: Ապա եթէ եւ այլքս ուրախ առնիցեն, զի մի թուեցայց թէ ամենեւին ի մարտ պատերազմի ընդ ցանկութեանս գրգռեցայ, որում թերեւս գոյ ինչ չափ բնականաւոր, ես ոչ համարիմ թէ բնաւ այսց ցանկութեանց չզգայ ծերութիւն: Իսկ զիս եւ սանձարապետացն զահերիցութիւնն որ յաւագաց կարգեցան, ուրախ առնեն, եւ բանն որ ըստ աւագաց սովորութեանն ի գլխաւորէ առնու ի գինիսն մինչեւ ցվերջինն հասանիցէ. սակաւ եւ զեղուն բաժակք որպէս ի Քսենոփոնեայ Սիմպոսին՝ որ թարգմանի խրախութիւն, կայ. եւ զովութիւնն ամառայնի եւ կամ արեգակն եւ կամ ձմեռնական կրակ. Զայս ամենայն եւ ի Սաբինոն ամփոփ եմ առնել, եւ եմ զօր հանապազ ի խրախճանս դրացեաց լինել. եւ զժամ խրախութեանն յերկարեալ ձգեմք այլի այլի խօսիւք մինչեւ ցմեծ ժամ ցայգութեանն:

Այլ թերեւս ի ծերսն չէք տենչմանցն խտտիղքն: Առնում եւ ես յանձն. նա եւ ոչ այնպիսի իրաց ցանկութիւն գոյ ի նոսա: Չէ ինչ այն ծանր եւ դժուարին, որում ոչն ցանկաս, չունել: Քաջիկ ասաց Սոփոկլէս յորժամ ծերն էր եւ եհարց ոք զնա թէ վարիցի աստղական ցանկութեամբ. Ան անդր, ասէ, փարքասա, քաւ լիցի, զի մատաղեւք իսկ ի նմանէ իբրեւ յագարակաւոր տեառնէ եւ ի մոլեկոյ եւս մազապուր փախուցեայ: Թերեւս որ այնպիսեացն ցանկացեալ իցեն, ծանր ինչ չունելն թուիցի. իսկ որ յագք եւ լիք իցեն, քան զվայելելն՝ չունելն եւս հեշտական է: Թէպէտ եւ ոչ եթէ չունիցի, որ ցան-

կանայցէ իսկ ոչ։ Այս այսպէս առեալ թէ եւս ինձ հեշտականագոյն է քան զվայելելն՝ չցանկալ։

Ապաքէն վայելելս վայելեն ատոք մանկութեանն յայնպիսի ցանկութիւնս, այլ չնչինովք վայելեն, որպէս կանխագոյն ասացաք, յետ այնորիկ՝ զի եւ ծերութիւն, եթէ յաճախութեամբ չունիցի, սակայն ոչ եթէ ամենեւին իսկ եւ բնաւին չունիցի։ Զոր օրինակ եւ ընդ Տուրբիոն Ամբիւիոս** առաւելագոյն ուրախ լինիցի որ յառաջնում կարգանի անդ նստեալ հայիցի, ուրախ լինի եւ որ ի վերջնումն նստիցի. նոյնպէս եւ երիտասարդութիւն մօտ հայեցեալ ընդ ցանկութիւնս թերեւս ուրախ առաւել լինիցի. բայց եւ ծերութիւն խրախ առնի հայեցեալ ընդ նոսա բացուստ ի բաց, այնչափ որչափ շատ եւ բաւական իցէ։

Նա եւ այն փո՞քր իցէ, մնալն իբրեւ ի վարձուտենել զցանկութիւնն եւ զփառսն եւ զհակառակութիւնն եւ զթշնամութիւնս եւ զամենայն համօրէն ցանկութիւնս, համակ ընդ իւր լինել եւ ընդ իւր կեալ։ Իսկ եթէ ունիցի ինչ ծերութիւն իբրեւ ճարակ փութոյ եւ ուսման, չիք ինչ քան զպարապորդ ծերութիւն հեշտականագոյն։ Տեսանէաք զԱ. Գաղղոս որ ընտելագոյն էր հօրն քում, Ափրիկոն, զի զօդ մեռանէր ի ջանս անդ վաստակոցն չափելոյ զերկինս եւ զերկիր։ Քանիցս անդամ մինչ գիշերի ձեռն արկեալ գիր ինչ նկարէր եւ լոյս առաւօտին ի վերայ հասանէր. եւ քանիցս անգամ գիշեր՝ յորժամ փաղորդայն առնէր սկիզբն։ Քանիո՞ն այն ուրախ առնէր զնա, յորժամ զարեգական եւ զլուսնի նուազութիւն կանխագոյն պատմէր մեզ բազում ժամանակօք։

Զի՞նչ լինիցի եւ ի ջանս քաջատեսիկն մտաց թէպէտ եւ թեթեւագոյնք իցեն։ Որչափ ընդ իւր պունիկեան կռիւն ուրախ լինէր Նեւիոս. որչափ Պղաւտոս ընդ Տրուկուղենտոս եւ ընդ Փսեւդողոս**։ Տեսի եւ զԼիւիոս ծերունի այն որ վեց ամօք կանխագոյն քան զծնունդն իմ, ուսուցանէր առակս, յորժամ Կենտոնն եւ Տուդիտանոս բդեշխք էին, եւ մինչեւ ցիմ երիտասարդութիւնն եղեւ յառաջադէմ հասակաւ։ Զի՞նչ ասացից կամ զի՞նչ խօսեցայց եւ զՊ. Լիկինեայ Կրասեայ փութոյ եւ յօժարութենէ վասն քրմապետութեան եւ քաղաքացեաց իրաւանցն. կամ զՊ. Սկիպիոնեայ Ջա-

նից որ ընդ աւուրս ընդ այսոսիկ ընդ սակաւս եկաց՝ քրմապետ մեծ։ Այլ զծերս զամենեսին զորոց յիշատակեցիս, ընդ նոյն փոյթ վառեալս բորբոքեալս տեսանեմք։ Իսկ զԿեթեգոս, զոր յիրաւի Ուղեղ Սուադեայ կոչեցէ Էննիոս, քանիօն փութով եւ ի ծերութեանն ի ճարտարխօսութիւն կրթէր։ Իսկ արդ զինչ այն կոչնոց եւ խաղուց եւ վարձակացն վայելչութիւնք իցեն յորժամ այնպիսի վայելչութեանց դնիցին համեմատ։ Մանաւանդ զի այս ամենայն ջանք վասնորոյ են ուսման վարդապետութեան։ Որք յանձինս իմաստնոցն եւ բարւոք խրատելոցն զոյգ ընդ տիոցն աճեցեալ զարգանայցեն. զի եղանիցէ ի գլուխ սքանչելի բանն Սողոնի զոր զանձնէ ասաց, որպէս կանխագոյն խօսեցայ, թէ բազում ինչ հանապազօր ուսեալ այնպէս ծերանայցէ. եւ քան զայն չէ իսկ մարթ եւ հնար թէ իցէ ինչ յաճախագոյն ուրախութիւն։

## ԺԵ

Գամ այսուհետեւ եւ ի մշակացն հեշտականութիւն, որով զուարճանամ ես յոյժ, որ եւ չխափանին ինչ ծերութեամբ, եւ թուի ինձ, թէ յիմաստնոցն կենանամօտ գան։ Քանզի ունին համար ընդ երկրի, որ ոչն երբեք ընդդէմ դառնայ տէրութեանն, եւ ոչ առանց տոկոսեաց երբեք հատուցանէ. այլ երբեմն սակաւ վաշխիւք եւ բազում անգամ մեծաւ տոկոսեօք։ Թէպէտ եւ զիս ոչ տոհմականք միայն, այլ եւ զօրութիւն եւ բնութիւն իսկ երկրին ուրախ առնէ, որ իբրեւ ի ծոց իւր ի կակղեալ եւ պատրաստեալ ակօսաձիգ զսերմանիսն ցանեալս ընդունիցի, նախ զսերմն ծածկեալ՝ բուռն հարեալ վակժոյժ լեալ պինդ ունի. յետ այնորիկ ջերմացեալ ի գոլոյ եւ ի պատելոյ եւ ի փարելոյ զնովաւ, ջովացեալ դալարացեալ զբոյսն ի դուրս արձակէ. որ արմատովքն խիղըս արկեալ զերկրէ, տակաւ աճէ, եւ կանգնի կայ ծնկակապ ուղղորդ ցօղն ծուն ր առ ծունր, իբրեւ ի չափ իմն հասեալ ընդ պատենիւքն մտանէ, յորոց իբրեւ արձակի, ապա յորդէ զարմտիս հասկին զցորենահատն կարգաւ կազմեալ յօրինեալ եւ ի մանր մանր ինչ հաւուցն խածատելոյ քստոցն պատնիշովքն ամրանայ։

Օ՜ն եւ զորթոց բոյսս եւ զտունկս եւ զաճմունս յիշեցեմ։ Չկարեմ յագել ուրախութեամբ, թէ միայն ծանիցէք զիմոյ ծերութեան հանգիստն եւ զխնդութիւն։ Քանզի թողում ի բաց զզօրութիւն իսկ ամենայնի, որ յերկրէ ծնանիցի. որ ի փոքրիկ թզոյն կորզոյ կամ ի թնոյ խաղողոյ կամ յայլոց եւս արմատոց եւ արմատոց մանր սերմանց այնչափ բունս եւ ոստս եւ բողբոջս ծնանի։ Մատուփողք եւ տունկք, ուռք եւ բարունակք, տաշտքն գլխովին եւ բազուկքն ընձողին եւ տունկք մանրատունկք. ո՞չ ապաքէն սոքա իցեն որ զո եւ պէտ ոք ուրախ առնիցեն զարմանալեօք։ Որթ քանզի ի բնէ իսկ խոնարհահակ է եւ եթէ ոչ կանգնի եւ հաստատի, ընդ գետին քարշի. զի զանձն կանգուն ունիցի, իւրովք գնդակօք իբրեւ ձեռամբք, զոր ինչ եւ գտանիցէ, բուռն հարեալ շաղեալ պատի, եւ եթէ բազմապատիկ թափ-առեալ մանի սողէ, երկաթով կոպէ եւ արգելու մշա-կաց ճարտարութիւնն, զի մի անտառացեալ ուռօք եւ բա-րունակօք, ընդ ամենայն կողմանս առաւել հատատեսցի։

Իսկ ի գալ գարնայնւոյն ժամանակի ի նոսա որ թողանն, յայտ գայ իբրեւ ի յօդս խաղալեաց ուռոցն այն, որ անուանեալ կոչի ակն, ուստի խաղող ելեալ երեւի. որ եւ խոնաւութեամբ սնանի հիւթով երկրին եւ ի տապոյ ջերման արեգական աճեցեալ զառաջինն թթու եւ փոթոթահամ ի ճաշակել է, ապա հասեալ քաղցրանայ, եւ հանդերձ տերեւապատ զգեցեալ եւ ոչ առանց չափ ինչ ջերման է, եւ ի սաստիկ տօթոյ արեգ-ականն ապրի։ Քան զոր իմ իմիք մարթիցի լինել ուրախարար ի վայելել եւ գեղեցիկ ի տեսանել. որոյ ոչ պիտանութիւնն միայն, որպէս կանխագոյն ասացի, այլ եւ դարմանն եւ բնութիւն իսկ ինքն ի գլխովին ուրախ առնէ զիս։ Սուլթիցն կարգն, գլխոցն լուծքն եւ հան-գոյցք եւ տարածանել որթոցն. եւ յուռոցն կիսոցն յա-տանել, զորմէ ասացին, եւ կիսոցն թողուլ։ Օ՜ն ինչ եւ զոռոգանելն եւ զարբուցանել, զի՞նչ զփոսիցն փորել եւ զմիւսանգամ նորոգել զանդոցն յառաջ բերիցեմ, որովք առաւել իմն բերրի երկիրն առնի։

Օ՜ն ինչ ասիցեմ վասն պիտանութեան զաղբն արկա-նելոյ։ Ասացի ի մատենին զոր զշինականութեան իրաց

գրեցի. զորմէ Քսենոփոն իմաստունն՝ եւ մի բան անգամ չառաց յորժամ զանդորոյն գաւառանաց գրեաց: Այլ Կիւրոս որ կանխագոյն բազում ժամանակաւ էր [*], որպէս ինձ թուի, զԼ. այսպէս ի մէջ բերէ թէ վասն զօրգւոյն անձուկն ցածուցանելոյ անդ եւ տղայական արօրագիր առնէր եւ աղբ արկանէր [*]: Եւ ոչ հնձովք միայն եւ մարգօք եւ այգեստանեօք եւ պարտիզանօք ուրախարար է շինականութիւն, այլ եւ բուրաստանօքն եւ մրգաբերօք, խաշանցն ճարակաւ, մեղուացն գնդակօք եւ ծաղկանցն ամենայնի գունակ գունակ կերպարանօք: Եւ ոչ անկելն եւեթ ուրախ առնիցէ, այլ եւ պատուաստելն. քան զորս չգտանիցէ ինչ մշակութիւնն եւս ճարտարութեան գործ:

### ԺԸ.

Կարեմ բազում ինչ զբօսանս շինականութեան արդեանց մի ըստ միոջէ ասել. բայց սակայն եւ զայն իսկ զոր ասացի, կարծեմ թէ երկայնագոյն ձգեցի. այլ արգահատեցէք զի եւ փութով արդեանց շինականացն յառաջադէմ եղէ եւ ծերացայ, եւ ծերութիւն իսկ ի բնէ շատախօս է. զի մի ի կարծիս անկանիցիմ թէ յամենայն թերակատարութենէ ազատ առնիցեմ զծերութիւն:

Արդ Մ. Կուրիոս, որ զՍամնիտացիսն եւ զՍաբինացիս եւ զՊիւռոս հալածեաց, զվերջին ժամանակս տիոցն յայս կեանս ծախեաց, զորոյ յորժամ զշէնն տեսանիցեմ, զի չէ ինչ կարի բացարձակ յինէն, չկարեմ բաւականն զարմանալ ընդ ժուժկալութիւն առնն գլխովին եւ ընդ այնց ժամանակաց խրատն: Յորժամ Կուրեայ, մինչդեռ առ կրակարանի նստէր, մեծ կշիռ ոսկւոյ Սամնիտացիքն մատուցին, խոտեցան ի նմանէ: Զի ոչ եթէ զոսկին ունել, ասէ, երեւելի համարիմ, այլ այնոցիկ որ զոսկին ունիցին, իշխել:

Իսկ արդ մարթիցէ՞ այնպիսում ոգւոյ չառնել հեշտական զծերութիւնն: Բայց ի մշակսն եկից, զի մի յանձնէ մեկնեցայց: Նա եւ ծերակոյտն այս ինքն որ ծերքն էին, յարտորայսն էին: Քանզի Լ. Կոյինկտեայ Կինկինատեայ, յորժամ արօրադիրն առնէր, զդոյց

համանէր թէ նա դիկտատոր եղեւ. որոյ հրամանաւ սպարապետ հեծելոցն Կ. Սերուիղիոս Ահաղա զՍպ. Մեղիոս, որ զթագաւորութիւնն ըղձանայր, ի բուռն առեալ սատակեաց: Ի շինէ անտի ի ծերակոյտ անդր կոչէին եւ Կուրիոս եւ այլ եւս ծերք, ուստի որ կոչէինն զնոսա վիատորս անուանեալ կոչեն, որ են ճանապարհորդք: Այլ արդ միթէ եղո՞ւկ ինչ նոցա ծերութիւնն էր, որ զանդաստանաց դարմանովք գային: Իսկ ըստ իմոց մտաց չգիտեմ թէ մարթիցի արդեւք եւս իմն երանելի կեանս գտանել. եւ ոչ միայն ըստ պատշաճի պիտոյիցն, զի բնաւին իսկ մարդկան ազգի կեցուցիչք են անդաստանացն դարմանք, այլ եւ ուրախութեամբ, զորմէ ասացի իսկ եւ զմայլութեամբ եւ ամենայն իրաց յաճախութեամբ, որ միանգամ ի դէպ առ կերակուր մարդկան եւ ի սպաս եւս դիցն իցեն, որպէս զի խօսիցիմք հաշտութիւն խաղաղութեան ընդ ցանկութեանն, քանզի եւ սոցա ոմանք ըղձանան: Զի ցանք իսկ եւ միշտ գեղուն շտեմարանք եւ մառանք գինւոյ եւ ձիթոյ, եւ համբարանոցք են ազնիւ եւ ժրագլուխ տեառն եւ ամենայն իսկ շէնն առատացեալ են, եւ ունին շատ խոզ, ուլն եւ ալոջ, գառն եւ որոջ եւ մարի եւ կաթն եւ պանիր եւ մեղր: Այլ զդրախտն ինքեանք իսկ մշակքն մեւս եւս խոզենի աղծեալ ապխտեալ անուանեն: Այլ եւս իմն գեղեցիկս կազմութեամբ զայս ամենայն յարդարեն հաւորսացն եւ որսորդացն զբօսանք:

Զի՞նչ զջրամարգաց դալարութենէ կամ զծառոցն կարգաց կամ զայգեստանաց կամ զձիթաստանեացն կերպարանաց ասիցեմ: Համառօտս հատից, կարճառօտս կտրեցից: Քան զանդ որ քաջ դարմանեալ իցէ չմարթի այլում իմիք պարարտագոյն առ ի պէտս լինել եւ կերպարանօք զարդարուն, յորոյ ի վայելչութիւն ոչ միայն չարգելու ծերութիւն, այլ եւ հրաւիրէ եւս եւ հրապուրէ: Քանզի ո՞ւր ուրեք ազնուագոյն մարթի այնմ հապակի կամ յարեւու կամ առ կրակի ջեռնուլ, կամ թէ միմեանց փոխանակաւ հովանեօք եւ ջրովք հովանալ, զի եւ այն կենաց պատճառք լինիցի: Արդ ունիցին ոմանք զզէնս, ոմանք զերիվարս, կէսք զտէգսն եւ զգեղարդունս եւ զաղեղնակապարճս եւ կէսք զցուպն,

ոմանք զգունդն, այլք զլուղան եւ զարշաւանս, իսկ մեզ ծերոցս ի բազում խաղուց անտի զկիցս թողուցուն եւ զատապեղուլունս, սակայն եւ զայն թէ այնպէս կամք իցեն. քանզի եւ առանց այնր իսկ մարթի ծերութեանն երանելի լինել:

## ԺԷ

Առ բազում իրս պիտանի են Քսենոփոնտայ մատեանքն: Զորս ընթերցարուք աղաչեմ փութով յօժարութեամբ, որպէս եւ առնէք իսկ: Քանի յաճախագոյն յարգեալ գովեցի ի նմանէ մշակութիւն ի գիրսն, որ վասն տոհմային իրաց խնամակալութեան է, որ Իկոնոմիկոսն կոչի: Եւ զի առնուցուք ի միտ թէ ոչ մի ինչ նմա արքունական, քան զփոյթ դարման տանելոյ անդոցն թուեցի, Սոկրատէս յայնմ մատենի ընդ Կրիտոբուղայ ճառ արկեալ խօսի, թէ Կիւրոս կրսեր արքայ Պարսից, որ ընտիր էր իմաստութեամբ եւ փառօք իշխանութեան, յորժամ եկն առ նա Լիւսանդրոս ղակեդեմոնացի առաքինի այր ի Սարդիացւոց քաղաքին եւ մատուցեալ տայր նմա պատարագս ի նիզակակցաց անտի. բազում իմն ընտանութիւն եւ մարդասիրութիւն առ Լիւսանդրոս արար, եւ անդաստան եւս ցանգով փակեալ եւ խնամով տնկեալ եցոյց: Իսկ իբրեւ զԼիւսանդրոս զարմանք կալան եւ ընդ բարձրաբերձ բարձրութիւն ծառոցն կարգեալ տողեալ հինգ հինգ, եւ ընդ հողն պեղեալ եւ որբեալ, եւ ընդ հոտոցն անուշութիւն, որ ի ծաղկանցն բուրէր. ասէ թէ ոչ ընդ հաւատարիմն միայն կամ զարմացեալ, այլ եւ ընդ տեղեկութիւն այնր, յորմէ չափեալ եւ նկատեալ են ծառքն. եւ ետ նմա Կիւրոս պատասխանի թէ զայդ ամենայն ես չափեցի. իմ են կարգքն, իմ նկարագիրն, եւ շատք եւս ի ծառոց այտի իմով իսկ ձեռամբ տնկեցան: Յայնժամ Լիւսանդրի նայեցեալ ընդ նորա ծիրանին եւ ընդ պաղպաջուն լուսաւորութիւնն եւ ընդ պարսիկ զարդն ոսկեհուռ ականակապ, ասէ. Ուղիղ զքեզ երանելի պատմեն Կիւրէ, զի ընդ առաքինութեան քում եւ բախտ խառն է:

Արդ ի նմին բախտի համարձակութիւն է եւ ծերոց վայելել եւ ոչ հասակն ինչ արգել լինիցի առ չունելոյ փոյթ յանձին զերաց իւրաց եւ մանաւանդ զանդոյ դարման տանելոյ մինչեւ ցյետին ժամանակ ծերութեանն ։ ՕՐ. Վաղերեայ Կորուեայ լսեմք ցհարիւրորդ ամն զկեանսն ձգեալ, որ զամենայն ժամանակս յանդաստանսն կայր եւ նոցին դարման տանէր. եւ ընդ առաջին եւ ընդ վեցերորդ բդեշխութիւնն քառասուն եւ վեց ամք ի միջի անցեալ էին ։ Որչափ ինչ ժամանակս տիոց առ սկիզըն ծերութեանն համարեցան մեր աւագքն, նոյնչափ ժամանակ էր պատուոյն նորա ։ Եւ վերջին հասակն նորա այնու եւս երանելի քան զմիջինն է, զի եւս աւելի ճոխութիւն ունէր եւ խոնջութիւն սակաւ ։ Իսկ կատարած ծերութեան ճոխութիւնն է ։ Որչափ ճոխութիւն ի Ղ. Կեկիղեոս Մետեղղոսն էր, քանի ինչ իշխանութիւն յԱտիղեոս Կաղատինոս, յոր եւ բան գովութեանն է. թէ ԲԱԶՈՒՄ ԱԶԳՔ ԸՆԴ ՄԻՄԵԱՆՍ ՄԻԱԲԱՆԵՑԻՆ, ԹԷ ԱՌԱՋԻՆ ԵՒ ԳԼԽԱՒՈՐ Է Ի ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ԱՅՐՆ ։

Ծանօթ է ողջոյն իսկ երգն, որ ի շիրմին դրոշմեալ կայ ։ Արդ ուրեմն յիրաւի ցածուն էր, զորոյ զգովութենէ ամենեցուն միաբան համբաւ էր ։ Որպիսի՞ ոք այր զՊ. Կրասսոս որ յառաջն մեծ քրմապետ էր, տեսաք, որպիսի՞ ոք յետ այնորիկ զՄ. Լեպիդոս որ զնոյն քրմութիւն յանձն առ, նշմարեցաք ։ Զի՞նչ զՊաւղղայ եւ զԱփրիկանեայ** յիշեցեմ, կամ թէ որպէս կանխագոյն իսկ ասացի զՄաքսիմեայ, յորոց ոչ միայն ի կամս մտացն, այլ եւ յակնարկելն ճոխութիւն երեւէր ։ Ունի ծերութիւն, մանաւանդ որ պատուականն իցէ, այնչափ ինչ ճոխութիւն, զի այն նախամեծար իցէ քան զամենայն բերկրութիւն մանկութեան ։

ԸԺ

Բայց յուշ լիցի ձեզ թէ ամենեւին ի բնաւ իսկ ճառիս զայն ծերութիւն յարգեմ, որ մանկութեանն հիմամբք հաստատեալ կայցէ. ուստի այն առնի, զոր ասացի իսկ, որում եւ ամենեքին համօրէն միաբան գտանին, թէ եղուկ՝ այն ծերութիւն է, որ բանիւք

անձինն պաշտպանիցէ։ Ոչ ալեք, ոչ խորշք յանկարծակի վաղվաղակի զիշխանութիւնն մարթեն ի բաց հանել, այլ առաջին հասակն, որ պարկեշտութեամբ անցեալ իցէ, զվերջին տոհմականս արդեանց իշխանութեանն առնու։

Բայց եւ այնք իսկ մեծարանաց են, որ թեթեւագոյնք կարծիցին, եւ հասարակաց իմն՝ ողջոյն տալ, մերձենալ, հրաժեշտ առնուլ, կանգնել, բերել, տանել, խորհուրդ հարցանել. որք եւ առ ի մէնջ եւ յայլ եւս քաղաքս, որ ազնուական բարս ունիցին, հաւաստեական պահին։ Ղիւսանդրոս ղակեդեմոնացի, զորմէ այժմիկ յիշատակեցաք, ասեն թէ սովոր էր ասել այսպէս, եթէ Ղակեդեմոնացւոց քաղաքն պարկեշտագոյն իմն բնակութիւն իցէ ծերոց։ Բայց ոչ ուրեք այնչափ ինչ շնորհ է այնր հասակի, եւ ոչ ուրեք երբեք առաւել պատուական է ծերութիւն։ Զի եւ ի յիշատակարանսն իմն կայ, թէ յորժամ յԱթենացւոց քաղաքի, ի խաղսն, եկն ծեր այր ի թատրն, եւ ի բազմամբոխ ժողովն չտուաւ նմա տեղի ուրեք յիւրոց քաղաքացեաց անտի. իսկ իբրեւ առ Ղակեդեմոնացիս մատեաւ, որ քանզի հրեշտակք էին, յառանձինն տեղւոջ առ միմեանս նստէին, ամենեքին յոտն կացին եւ զծերն առեալ նստուցին։

Եւ իբրեւ ի համօրէն ժողովոյ անտի բազմապատիկ կայթիւն եւ դոփիւն նոցա լինէր, ասէր ոմն ի նոցանէ, թէ Աթենացիք գիտեն որ ինչ ուղիղքն իցեն, բայց առնել չկամին։ Գոյ բազում ինչ լուսաւոր եւ ի մերում ատեն ժողովրդանոցիս, այլ առաւել այն իսկ զորմէ բանքս ճառին թէ որչափ յառաջ ոք մատչիցի տիօք, դոյնչափ զկարծեաց եւ զմտաց զառաջին իշխանութիւնն ունիցի, եւ ոչ միայն քան զյառաջադէմս պատուովք, այլ եւ քան զայնոսիկ, որ յաւագ ինչ իշխանութիւնս իցեն, ծեր իղձքն նախամեծար համարին։ Արդ զինչ ցանկութիւնքն իցեն մարմնոյ՝ յորժամ ընդ ճոխութեանն վարձուց համեմատեալ կշռիցին, եւ որ վարեցանն նոքօք, ինձ այսպէս թուին թէ պատրանս ինչ հասակի առնիցեն, եւ ոչ՝ իբրեւ զդուսանսն անվարժս զգոյշ լինիցին թէ մի ի վերջնումն վատթարեալ կործանիցին։

Այլ դժնդակք իցեն եւ տագտուկք եւ ցասկոտք ծերքն. թէ խուզիցեմք, եւ ագահք եւս եւ կծծիք։ Այլ

այն ամենայն բարուց չարիք են, եւ ոչ ծերութեան։ Սակայն եւ դժնդակութիւնն եւ չարիքն զորոց ասացի, ունին իմն զմեղադրութիւն, ոչ եթէ արդար ինչ, այլ որ թուիցի ընդունելի լինել։ Արհամարհեալն իմն զանձինս համարին, անարգեալ, խաղ եւ կատականք եղեալ։ Մանաւանդ զի ի տկար մարմնի ամենայն իսկ վիշտք առելի են։ Սակայն այն ամենայն քաղցր լինին բարուքն բարոյիւք եւ ճարտարացն արուեստիւք զայդ եւ ի վարս եւ ի գուսանութեան դոյ հնար իմանալ յեղքարց անտի, որ յԱդելփիսն* իցեն։ Որչափ ի միումն խստութիւն, եւ ի միւսումն մարդասիրութիւն։ Այսպիսի իսկ են իրքն։ Զի զոր օրինակ ոչ ամենայն գինի, նոյնպէս եւ ոչ ամենայն հասակ հնացեալ բարկ լինիցի։ Զսաստկութիւն ի ծերութեանն գովեմ, բայց եւ զայն, որպէս եւ զայլսն՝ համով. իսկ զբարկ միտս ոչ երբեք։ Իսկ կծծութիւն ծերոյ բնաւ իսկ զի՞նչ յայտ կամիցի առնել, զայն չառնուամ ի միտ։ Քանզի գուցէ ինչ արդեւք քան զայն անպատեհութեան, թէ որչափ սակաւ ուրուք ճանապարհ մնացեալ իցէ, դոյնչափ եւս աւելի պաշար խնդրիցէ։

ԺԹ.

Այն մնան եւ չորրորդ պատճառք. որ թուի թէ աւելադոյն զմեր հասակս նեղեալ տագնապիցէ, մահուն մերձենալ. որում եւ չէ մարթ թէ կարի հեռի ի ծերութենէ իցէ։ Ոհ թշուառական ծերոյն, որ յայնչափ երկայն տիս չառ ի միտ թէ պարտ է զմահ արհամարհել. զորմէ պարտ է անփոյթ իսկ առնել, թէ ամենեւին զմիտսն շիջուցանիցէ, եւ կամ ըղձանալ եւս թէ ի տեղի ինչ առաջնորդեսցէ նմա, ուր յաւիտենից լինելոց իցէ։ Եւ մեւս ինչ երրորդ չիք հնար գտանելոյ։

Ես արդ զի՞ երկնչիցիմ թէ յետ մահուան կամ չիցեմ լինելոց եղուկ եւ կամ երանելի եւս։ Զի եւ ո՞ այնչափ անմիտ ոք իցէ, թէպէտ եւ երիտասարդ եւս իցէ, որում յայտ իցէ թէ մինչեւ ցերեկոյ կայ կենդանի։ Այս աւանիկ այն հասակն եւս բազում քան զմերս՝ մահու պատահարս ունի։ Յախտ դիւրաւ անկանին երիտասարդք,

ծանրագոյն խաւթանան, տրտմութեամբ զարմանին։ Սան որոյ եւ սակաւք իսկ հասանեն ի ծերութիւն. զի եթէ այնպիսի ինչ ոչ դիպէր, աղնուագոյն եւ իմաստնագոյն կեանս հասանէր կեալ։ Քանզի միտք եւ հանճար եւ խորհուրդ ծերոց է. որք թէ չէին, չգոյին ամենեւին եւ քաղաքք։ Այլ եկից այսրէն ի մահն հասեալ ի վերայ։ Զի՞նչ այն մեղս իցէ ծերութեան, յորում զնոյն ընդ երիտասարդութեան հասարակ տեսանիցէք։

Առի ես ի միտ ի բարւոք որդեակն իմ եւ ի պատուական եղբարս քո, Սկիպիոն, թէ հասարակաց ամենայն հասակաց է մահ։ Այլ ակն ունի, ասեն, երիտասարդն թէ ընդ երկար կեցցէ. իսկ ծերն չմարթի նմին ակն ունել։ Անմտութեամբ ակն ունի։ Քանզի զի՞նչ քան զայն անհանճարագոյն կայցէ, զանյայտն առ յայտնիս ունել, զվրիպականսն առ ճշմարիտս։ Դարձեալ ծերն, ասեն, չունի ինչ որում ունիցի ակն։ Այլ նովիմբ քան զերիտասարդն՝ եւս աղնուագոյն է. զի յայն ինչ զոր նայն յուսայ, սա եհաս։ Նա ընդերկար կամի կեալ, եւ սա երկարագոյն եկեաց։ Թէպէտ ո՞ր այն երկարագոյն կեանք իցեն ի կեանս մարդկան։

Նայեսցուք ընդ տիս Տարտեսիացւոց թագաւորին. քանզի եղեւ իսկ, որպէս եւ տեսանեմ գրեալ, անուն Արգանթոնիոս ի Գադս, որ ութսուն ամս թագաւորեաց, հարեւր եւ քսան ամ եկեաց։ Այլ ինձ ոչ մի ինչ երկարագոյն թուի, յորում գոյ ինչ սպառուած։ Զի յորժամ վախճան հասանիցէ, յայնժամ եւ այն ամենայն, որ անց, սահեալ գնայցէ. այն միայն կայ, զոր առաքինութեամբ եւ ուղղութեամբ գործովք հասեալ իցես։ Գնան ժամք եւ աւուրք եւ ամիսք եւ տարիք. ոչ անցեալ ժամանակն երբեք դառնայ այսրէն. եւ ոչ թէ զինչ զհետ գայցէ, մարթիցի գիտել։ Այլ զինչ ժամանակ կենդանութեան տուեալ է, նովիմբ պարտի շատանալ։

Քանզի եւ ոչ դերասանին արժան է զառասպելն կատարեալ հանել ի գլուխ, այլ հաճոյ լինիցի, միայն թէ յոր գործ եւ լեալ իցէ՝ ընտիր գտանիցի. եւ ոչ իմաստնոյ հարկ է մինչեւ ցկայթելն եւ ցտոփել կեալ։ Զի կարճ ժամանակ տիոցն, երկայն է բաւականութեամբ առ

բարւոքն եւ զգաստութեամբ կեանս կելոյ։ Ապա թէ երկայնագոյնս յառաջ մատչիցիս, ոչ աւելի ինչ պարտիս տրտմել քան որչափ մշակք տրտմիցեն, ընդ հասանել տապոյն եւ աշնայնոյ՝ ի գարնայնոյն քաղցրութեան ժամանակին անցանել։ Քանզի գարունն զերիտասարդութիւն իմն նշանակէ եւ զհանդերձեալ մրգացն յոյս տանէ, իսկ այլ եւս ժամանակք զարդիւնս հնձելոյ եւ ժողովելոյ պատշաճեցան։

Իսկ պտուղ ծերութեանն, որպէս բազում անգամ ասացի, յառաջագոյն ծնելոց բարութեանց յիշատակն եւ յաճախութիւն է։ Զամենայն ինչ, որ ըստ բնութեանն լինիցին առ բարւոքս պարտ է ունել։ Իսկ զի՞նչ ինչ այնպէս ըստ բնութեան իցէ, որպէս ծերոց մեռանել. քանզի նոյն եւ երիտասարդաց դիպի, թէպէտ եւ բնութիւն ընդդէմ դարձեալ կռուիցի։ Վասն որոյ ինձ թուի թէ այնպէս մեռանիցին երիտասարդք, զոր օրինակ յորժամ ի ջրոյն բազմութենէ սաստկութիւն բոցոյն բոցբոքելոյ պարտեալ գտանիցի. այլ ծերք իբրեւ խարոյկ իւրեանց կամօք առանց իրիք բռնութեան լինելոյ, սպառեալ հրոյն մեռանին։ Եւ որպէս միրգք ի ծառոց թէ խակ իցեն, բռնութեամբ քաղին, եթէ հասեալ եւ եփեալ, անկանին. ըստ նմին օրինակի եւ զկեանս երիտասարդացն բռնութիւն ի բաց քարշէ, իսկ զծերոցն՝ հասանելն. որ եւ ինձ այնչափ քաղցր եւ հեշտական է, զի որչափ մօտագոյնս ի մահ անդր մատչիցիմ, իբրեւ զցամաք տեսանել համարիցիմ, եւ թէ յերկայն նաւարկութենէ երբեմն ի նաւահանգիստ հասանելոց եմ։

Ի

Ամենայն հասակաց է ինչ կատարած սահմանեալ, այլ ծերութեան չէք ինչ կատարած սահմանեալ. եւ ի նմա հասանէ կեալ ուղիղ, զորքան ժամանակս զգործ սպասուն մարթիցես ի գլուխ հանել եւ վճարել. սակայն զմահ պարտ է արհամարհել։ Այսով առնի զի եւ ծերութիւն առաքինագոյն քան զերիտասարդութիւն իցէ եւ ուժգնագոյն։ Այս այն է, որ Պիսիստրատայ բռնաւորի առ ի Սողոնէ տուաւ պատասխանի, զի ի հարցանել նո-

րա ցՍողոն թէ յոր յոյս ապաստան այնպէս յանդգնեալ նմա ընդդէմ դառնայցէ, ասէ թէ ի պատասխանի եթէ ի ծերութիւն։ Այլ կենաց բարւոք վախճան այն է յորժամ ողջ միտքն իցեն եւ այլ եւս զգայունք, եւ ինքն զիւր գործ, որ միախուռն ի մի վայր գումարեալ յօդեաց բնութիւնն, քակիցէ։ Զոր օրինակ զնաւ կամ զշինուած ինչ նոյն դիւրաւ քայքայէ, որ կազմեացն, նոյնպէս զմարդն նոյն բնութիւն որ յօդեացն, ազնուագոյն քակէ։ Զի ամենայն զօդ մինչ դեռ նորն իցէ, դժուարաւ խախտի. եւ յորժամ հնասցի դիւրաւ։ Այսպէս ոչ այնմ դոյզն մնացելոյ կենդանութեանն արժան է ծերոց սաստիկ ցանկանալ եւ ոչ առանց պատճառանաց յանձանց մերժել։

Եւ Պիւթագորաս արգելու առանց իշխանին հրաման տալոյ, այն իսկ է Աստուծոյ ի պահպանութենէ եւ ի կայից կենդանութեան ի բաց գնալ։ Այս իսկ արձանագիր Սողոնի իմաստնոյ, յորում յայտ առնէ թէ չկամի թէ առանց ցաւոց եւ հեծութեան բարեկամացն իցէ մահ իւր։ Գիտեմ թէ սիրելի իւրոցն կամի լինել. այլ զայն ինչ ոչ գիտեմ թէ ազնուագոյն ինչ արդեւք Էննիոս.

ՄԻ ՈՔ ԶԻՍ ԱՐՏԱՍՈՒԱՒՔ ԶԱՐԴԱՐԻՑԷ. ԵՒ ՄԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՈՂԲՈՎՔ ԱՌՆԻՑԷ։

Զհամարի աշխարհանաց զմահն, զորոյ զհետ գայցէ անմահութիւն։ Զի եթէ իցէ ինչ զգայութիւն մեռանելոյ, այն առ սակաւ մի ժամանակ է, մանաւանդ ծերոյն. իսկ յետ մահուն զգայութիւնն կամ ցանկալի է եւ կամ ոչ ինչ իսկ։ Այլ զայս յերիտասարդութենէ պարտ է ածել զմտաւ, զի զմահուանէ անփոյթ առնիցեմք. քանզի առանց զայդ զմտաւ ածելոյ, չիք ումեք հնար հանդարտ մտօք լինել։ Զի արդարեւ կայ մեռանել, այլ այն չէ յայտ թէ արդեւք ի նմին իսկ աւուր։ Արդ ո՞ պք որ ի մահուանէն որ յամենայն ժամ ի վերայ կայ՝ երկնչիցի եւ կարիցէ մտօք կալ ի հաստատ։ Զորմէ թուի թէ չեն ինչ պէտք այնպէս երկայն վիճելոյ, յորժամ յիշեցեմ ոչ միայն զԼ. Բրուտոս, որ ի զաշխարհն ազատել, սպանաւ, ոչ զերկուս Դակիոսան որք ի կամաւոր մահն զերիվարացն արշաւանս մղեալ դիմեցուցին. ոչ զՄ. Ատիլիոս որ ի տանջանս դիմեաց, զի զուխտն զոր ընդ թշնա-

մայն եղ՝ պահեսցէ, ոչ զՍկիպիոնեան երկաթեան որ իւրեանց իսկ անձամբք եցին զճանապարհ գալոյ Պենացւոցն. ոչ ըղ-հաւն քո զՊ. Պաւղոս, որ մահուամբն եւ տոյժս զժպրհու-թեան ընկերին ի Կանեանայ թշնամանան. ոչ զՄ. Մար-կեղոս, զի եւ ոչ անագորոյն թշնամին առ յանձն թէ ի թաղելոյն պատուոյ զրկեսցի դիակնն, այլ զգունդս զօ-րացն եւ ի սկզբանցն գիրս գրեցի, որք բազում անգամ զաւարճացեալ մաօք եւ յօժարութեամբ յայն վայր դիմեն, ուստի չհամարեցին եթէ դառնայցեն այսրէն։ Այլ արդ զոր երիտասարդք, եւ այնք ոչ միայն ոգէոք եւ խամք, այլ եւ խամք, այլ եւ շինականք արհամարհեն. երկիցե՞ն ինչ յայնմանէ ծերք գիտունք։

Ամենեւին ոսպէս ինչ ինձ թուի, ամենայն փութով ջանից յագել. տայ յագել կենօքն։ Այն հրահանգք որոշեալք մանկութեան. արդ միթէ ցանկան ինչ ընդ նո-սա երիտասարդք։ Այն եւ մատաղ երիտասարդութեան. միթէ խնդրէ՞ ինչ զնոսա հաստատուն հասակն, որ միջինն կոչի։ Այն եւ այնր հասակի, բայց եւ ոչ նոյնք ի ծերու-թենէ խնդրին։ Այն եւ յետին ինչ հրահանգք ծերու-թեան. արդ զոր օրինակ առաջին տիոցն ջանք անկանին, նոյնպէս եւ ծերութեանն անկանի ջանն։ Այլ իբրեւ այն լինիցի, յագելն կենօք՝ զհասեալ ժամանակ մահուն ի վերայ ածիցէ։

Արդարեւ չառնում ի միտ թէ ընդէ՞ր զինչ ինքնին զմահուանէ իմանայցեմ, չերկնիցեմ ձեզ ասել. զի այն-չափ ավնուագոյն թուի ինձ, որչափ ի մահ անդր մօտ իցեմ։ Այլ զձեր հարս, Պ. Սկիպիոն եւ Կ. Լելէ, զարս երեւելիս եւ զիմ բարեկամս այսպէս համարիմ թէ կեն-դանի են, եւ զայն կեանս կեան, զոր միայն պարտ է կեանս կոչել։ Զի մինչդեռ ի մարմնոյ պարաւանգս կա-պեալ պրկեալ կայցեմք, սպաս ինչ հարկի եւ գործ ծանր վճարեմք։ Քանզի են մեզ երկնաւորք ի բարձրաբերձ բնակութենէ կործանեալ եւ ընկղմեալ իմն յերկիր ի տե-ղի որ աստուածեղէն բնութեանն եւ մշտնջենաւորու-թեանն հակառակ է։ Այլ թուի ինձ, զիցն անմահից զոգիսն ի մարմինս մարդկեղէնս սփռել, զի իցեն որք զեր-կիր դարմանիցեն, եւ ընդ երկնաւորացն կարգ հայեցեալ՝ նմանօղ այնմ լինիցին գնացիւք եւ հաստատուն մաօք։

Այլ զիս ոչ միայն միտք եւ բանից հակառակութիւն հաւանեցոյց զի այնպէս համարիցիմ. այլ եւ ազնուականութիւն եւս ճարտարապետաց փիլիսոփայից եւ ճոխութիւնն։

Լսէի զՊիւթագորայ եւ զՊիւթագորայեցն դրեթէ զմեր իսկ՝ բնակչաց, որք իտալական փիլիսոփայքն երբեմն անուանեալ կոչէին, թէ ընդ այս չէին երկմտեա թէ չունիցիմք միտս ի համօրէն աստուածեղէն մտացն հեղեալ։ Այլ անցանէր դարձեալ առաջի իմ ի հանդիսի, զոր Սոկրատէսն ի վերջնում աւուր կենացն զոգւոցն անմահութենէ ճառէր, այն՝ որ քան զամենեսեան իմաստնագոյն Ապողոնեայ հրամանաւ համարեցաւ։ Ո՞ն իսկ յաճախիցեմ խօսել։ Որպէս եղի ի մտի իմում, այնպէս իմանամ, թէ յորժամ այնչափ երագութիւն մտացն իցէ, այնչափ յիշատակք անցից անցելոց, եւ առ յապա լինելոց իրաց հանդերձելոց իմաստութիւն, այնքան ճարտարութիւնք, այնչափ գիտութիւնք, նոյնչափ հնարագիտութիւնք, չէ մարթ այնր բնութեան որ զիրսն զայնոսիկ ունիցի, մահկանացու լինել։ Այլ զի հանապազ յուզին եւ շարժին միտք եւ չունին սկիզբն շարժմանն, քանզի ինքն զինքն շարժէ, առնում ի միտ թէ չունիցի կատարած շարժմանն, քանզի ոչ եթէ ինքն զինքն երբեք թողուցու։ Այլ զի պարզական եւ սուղական բնութիւն է ոգւոցն, եւ չունի ինչ յինքեան խառնուած որ ոչ իւր զուգական իցէ եւ նման, չէ մարթ նմին բաժանել, եւ եթէ այնմ չիցէ հնար, ապա եւ ոչ հնար դոյ կորնչելոյ։ Մեծ իմն յանդիմանութիւն է մարդկան բազում ինչ, մինչ չեւ իցեն ծնեալ, գիտելոյ, զի ի մանկութեան յորժամ արուեստս ինչ դժուարինս ուսանիցին, այնպէս արագ արագ անհամար իրս առնուն ի միտ, զի ոչ յայնժամ զառաջինն թուին թէ ընդունիցին, այլ թէ յիշիցեն իմն եւ զմտաւ ածիցեն։ Այս ամենայն Պղատոնեայ է։ Իսկ առ Քսենոփոնեայ Կիւրոս մեծ ի մեռանել իւրում այսպէս ըստ սոցին բանից բարբառեցի։

Մի համարիք որդեակք, սիրելիք թէ ես յորժամ ի ձէնջ մեկնեցայց ոչ ուրեք լինիցիմ կամ չիցեմ բնաւ ամենեւին։ Քանզի եւ ոչ մինչդեռ ընդ ձեզն իսկ էի, զիմ ոգին տեսանէիք. այլ թէ է ի մարմնի աստ, յայնց իրաց

զոր գործէի, իմանայիք։ Արդ համարեսջիք թէ է նոյն, թէպէտ եւ տեսանիցէք ոչ։

Ոչ ի եւ ոչ արանց երեւելեաց յետ մահուն մնայր պատիւն, թէ ոչ նոցուն իսկ ոգիքն ազդէինն ինչ որով երկարագոյն զյիշատակս ունէաք ի միտ։ Ինձ չեւ զեւ հնար առնուլ յանձն, թէ ոգիքն մինչդեռ ի մահկանացու մարմինս իցեն, կեցցեն. եւ իբրեւ ի նոցանէ ելանիցեն, մեռանիցին. եւ ոչ թէ յայնժամ ոգիքն անիմաստագոյնք լինիցին, յորժամ յանիմաստ մարմնոյ ի բաց սրանայցեն, այլ թէ յորժամ յամենայն մարմնոյ խառնուածոյ զերծեալ՝ սուրբ եւ յստակ եւ ողջ սկսանիցի լինել, յայնժամ լինիցի իմաստուն։ Նա եւ յորժամ մարդոյ բնութիւն մահուամբ լուծանիցի, յայտնի է թէ յո ուրեք իւրաքանչիւր յայլոց իրաց մեկնեալ գնայցէ, քանզի ամենայն ինչ անդր գնայ, ուստի եկն. իսկ ոգին միայն՝ ոչ յորժամ մօտ իցէ, եւ ոչ յորժամ հեռի, երեւի։ Նա եւ տեսանէք թէ նման ինչ այսպէս մահու չիք, որպէս զքուն։

Այլ ոգիք այնոցիկ որք ննջեցեալն առաւել զիւրեանց անմահութիւն յայտ առնիցեն։ Քանզի յորժամ արձակեալք եւ զերծեալք են բազում ինչ իս յառաջագոյն նշմարեն, թէ առ յապա լինելոց է, որով իմանի թէ որպիսիք ոք լինելոց իցեն յորժամ ամենեւին ի մարմնոյն կապանաց պանձինս քակիցեն։ Վասն որոյ թէ այդ այդպէս իցէ, իբրեւ զդիսն այնպէս դիք ինձ մեծարանս։ Ապա եթէ միանգամայն ոգիքն ընդ մարմնոյ կորընչելոց իցեն, սակայն ձեր զդիսն մեծարեալ որք զայս ամենայն գեղեցկութիւն զարմանեն եւ վարեն, զմեր յիշատակս դիւցապաշտութեամբ եւ անարատ պահեսջիք։ Այսպէս զայն ձեւ Կիւրոս ի մեռանելն իւրում. իսկ եթէ համոյ թուեսցի, մեք զմերս տեսցուք։

Ոչ ոք զիս, Սկիպիոն, հաւանեցուսցէ թէ քո հայրն Պաւղոս կամ երկու հաւքն Պաւղոս եւ Ափրիկանոս կամ Ափրիկանեայ հայրն կամ հօրեղբայր կամ բազում արք ընտիրք, զորս չէ հարկ մի ըստ միոջէ թուել, այնչափ ինչ ջանացին վասն յիշատակ յետնոցն թողլոյ, թէ ոչ միտք նկատէին թէ ունին իմն հաղորդութիւն ընդ նոսա յետինքն։ Նա զինէն իսկ իւիք ըստ ծերոցն սովորութեան պարծեցայց. համարիցիս թէ ես զայնչափ վաստակս

զցնրեկութեան եւ զցայգութեան ատոնին եւ ի պատերազմի առնուցում յանձն, թէ որով վախճանաւ զկեանս հանիցեմ ի գլուխ՝ նովին եւ զպարծանս: Ոչ ապաքէն յոյժ իսկ լաւ էր պատարկութեան տիս եւ հանգստեան կեանս առանց իրիք աշխատութեան կամ ճգնութեան վարել: Այլ հզգետեմ զհարդ եւ որով օրինակաւ միտք իմ զանձն քաջալերեալ՝ այնպէս զյետինն հանապազ յառաջագոյն նշմարէր, որպէս թէ յորժամ ի կենացն մերժեսցի, յայնժամ կեցցէ: Զի եթէ ոգիքն չէին անմահ, ոչ առաքինեացն միտք առաւել յանմահ փառաւորութիւնն փութային:

Զի՞ է, զի իմաստունք հանդարտութեան մտօք մեռանին, իսկ անմիտք մտօք խռովելովք: Ոչ իսկ թըւիցի ձեզ, եթէ միտք, որ առաւելն նկատիցեն եւ բացագոյն, տեսանէ զի ի լաւագոյնս յառաջեալ ընթանայ, եւ թէ այն միտք որ շլագոյն աչք իցեն ոչ տեսանեն: Արդարեւ յոյժ իսկ անձկացեալ եմ տեսանել զհարսն ձեր, որոց սպաս հարի եւ սիրեցի. եւ ոչ առ նոսա միայն ցանկամ երթալ, զորս ես իսկ ծանեայ, այլ եւ առ այնոսիկ զորոց լուայն եւ ընթերցայ եւ ինքնին իսկ գրեցի ի մատեանի: Իսկ զիս որ անդր յառաջեալ իցեմ, ոչ դիւրաւ այսրէն ոք յետս ձգիցէ եւ ոչ իբրեւ զՊեղեաս միւսանգամ եփեսցէ*, եւ եթէ ոք ինձ ի դիցն շնորհէր, զի յայսմ հասակէ միւսանգամ մանկացայց եւ ի խանձարուրս պատեցայց, չառնոյի յանձն. զի ոչ կամիմ յետ ընդ անջրպետութիւնն ընթանալոյ միւսանգամ* յարգելան անդր դառնալ:

Քանզի զի՞նչ դիւրութիւն կեանքս ունիցին, մանաւանդ թէ զոր աշխատութիւն ոչ: Այլ թէ ունիցի եւս ինչ, սակայն ունի կամ զյագելն կամ զչափն: Զի ինձ չէ հաճոյ զկեանս աշխարել, զոր բազումք բազում անգամ եւ նոքին գիտունքն արարին: Եւ ոչ ցաւէ ինձ ինչ ընդ կեալս, քանզի այնպէս կեանս կեցի, մինչ զի չհամարիցիմ զինէն թէ զուր եւ ընդ վայր ծնայ, եւ այնպէս մեկնիմ ի կենաց աստի, որպէս յասպնջականութենէ եւ ոչ իբրեւ ի տանէ: Քանզի ագանելոյ իջավան ետ մեզ բնութիւնն եւ ոչ բնակելոյ:

Ո՜հ մեծապայծառ աւուրն յորժամ երթայցեմ յայն ժողով եւ ի ջոկ ոգւոցն աստուածեղինաց, եւ ի

խռովութենէ աստի եւ յաղմկէ մերժեցայց։ Քանզի երթայց ոչ միայն առ արսն այնոսիկ զորոց կանխագոյն ճառեցի, այլ եւ առ Կատոն եւս քան զոր չիք ոք այր լաւագոյն եւ քաջութեամբ ազնուագոյն. որոյ մարմինն յինէն այրեցաւ, ուր պարտ իսկ էր իմոյ դիոյն ի նմանէ այրել։ Իսկ ոգիքն յայն վայր երթեալ հասին յոր վայր եւ ինձ համարէր գնալ, եւ ոչ եթէ թողին ինչ զիս, այլ ինձ դէտ ակն ունին։ Այլ ես այսպէս իսկ երեւէի թէ արութեամբ քաջութեամբ աղետին համբերի. իբր ոչ եթէ զի անխռով էի, այլ զի ինքնին անձին մխիթար լինէի, զմտաւ ածեալ թէ ոչ երկայն ինչ ընդ նա եւ ընդ իս խտրոց եւ անջրպետութիւն ի միջի կայ։

Այսու ամենայնիւ Սկիպիոն, թեթեւ է ինձ ծերութիւն, եւ ոչ միայն ծանր եւ տաղտուկ ոչ, այլ եւ հեշտական եւս. զի ասացեր զքէն թէ ընդ այն իսկ սովոր ես Լելեաւ հանդերձ զարմանալ։ Քանզի եթէ այնու իմն մոլորիցիմ զի զմարդկան ոգիս անմահս համարիմ, յօժարագոյն մոլորիմ, եւ ոչ, մինչ դեռ կենդանիս եմ. կամիմ թէ այն մոլորութիւն՝ ընդ որ խնդամս, մերժեսցի յինէն։ Ապա եթէ յորժամ մեռանիցիմ ոչ իմիք զգայցեմ, որպէս փիլիսոփայքն ոմանք անհանճարագոյնք ասեն, ոչ ինչ զանգիտեմ թէ մի զայդու մոլորութեամբ իմով ծիծաղիցին փիլիսոփայքն մեռեալք։ Զի թէպէտ եւ անմահք եւս չիցեմք լինելոց, սակայն մարդոյ ի ժամանակի իւրում վախճանել՝ ցանկալի է։ Զի որպէս այլոց ամենայն իրաց նոյնպէս եւ կենաց ունի չափ բնութիւնն։ Իսկ ծերութիւն վախճան տիոցն է, իբրեւ գուսանական առասպելին. յորոյ աշխատութենէ եւ ի տաղտկութենէ պարտիմք փախչել, մանաւանդ թէ եւ յագել եւս հասանիցէ։ Զայս ունէի զծերութենէ ասել. երանի թէ եւ յայն հասանէիք, զի զայնոցիկ՝ զորս յինէն լուայք, զչափ առնուլ մարթայցէք։



